# ԱՐԾՈՒԱԿԻՐ ՆԱՄԱԿԸ

Ձուլարանի հնոցին դէմ, գրեթէ մերկ՝ Տիգրան կ՚աշխատէր քրտնաթոր:

Անիկա այդ կեանքին կապուած էր շատ հին օրերուն, երբ դեռ երիտասարդ էր, երբ իր ճակտին վրայ ու աչքերուն մէջ Արեւելքի բարկ ու կախարդական արեւին հետքը կար…

Տարիները իր վրայէն անցեր էին ճռճռացող սայլի մը պէս, որոնց ամբողջութիւնը տեղ չունէր Տիգրանի յոգնած ուղեղին մէջ:

Սրտին մէջ կային միայն Երկիրը, հօրենական տունը, եւ այդ տան բազմութիւնները՝ դեղջուկի տարազներով ու կչկչան ձայներով: Երբ կը մտաբերէր իր երէկը… Հէքեաթի մը պէս հին էր ու վառվռուն՝ այդ անցեալը, որոնց մէջ կը տեսնէր այն տունը՝ որուն պատերուն քսուելով ու խնալով՝ հասակ առած էր Տիգրանը: Կը յիշէր ցեխոտ փողոցները իր գիւղին, կապոյտ ծուխը որ կը բարձրանար տանիքներէն, ոլորուն ճամբաները արտերու եզերքներէն: Պանդխտութեան մէջ լսեց այդ բոլորին փլուզումը: Սիրտը ճմլուեցաւ իր տան կործանումին, ու իրեններուն կոտորածին… Աչքերը ուղղած կրակէ հնոցին, կաղապարներու մէջ թափուած կարմիր ու բարակ ջրվէժներուն՝ պանդուխտ Հայը կը շարժէր, կը պրկէր բազուկները եւ սեւցած քրտինք մը կը հոսէր իր այտերէն, ծոծրակէն, ու մազոտ դաստակներէն:

Եկեր էր դրամ շահելու… Երկիրը եւ իր տունը չկային հիմա, եւ Տիգրանին սիրտը դարձեր էր խարխլած ջրաղացի մը պէս տխուր, մենաւոր:

★

Հայաստանի Հանրապետութեան խորտակումէն վերջ, Տիգրան մտածեց իր բոյնը շինել Ամերիկայի մէջ, իր կեանքը կապելով հայ կնոջ մը հետ: Տարիները անցան, Տիգրան միշտ մնաց նոյն գործին վրայ, եւ իր ուժին մեծագոյն մասը սպառեցաւ երկաթի գործարանին դժոխային ժխորին մէջ: Իր սպառած ուժին քով սակայն, Տիգրանին պարապ սիրտը լեցուած էր ուրիշ ուրախութեամբ:

Գործէ տուն դարձին՝ կը գրկէր իր երկու տղաքը, կը սիրէր, կը համբուրէր, կը կատակէր ու բարձրաձայն կը խնդար՝ ցոյց տալով իր թափած ակռաները, ճաղատ գլուխը, եւ գունատ երեսն ու փոսը ինկած աչքերը: Այդ տղոց մէջ ան կը տեսնէր իր երէկի տունը, ալեհեր հայրն ու մայրը, իրենց տան երդիքներէն բարձրացող ծուխը: Կորսուած երջանկութեան մը վերադարձումը կը զգար հիմա:

Յոյսի եւ հաւատքի ապրումներով, Տիգրան մեծցուց իր տղաքը, դպրոց դրաւ եւ զանոնք ղրկեց մինչեւ բարձրագոյն կրթարաններէն ներս:

— «Ես մարդ չեղայ՝ թող տղաքս ըլլան», — կ՚ըսէր իր կնոջը, ընկերներուն, ու բարեկամներուն:

Տիգրանի ընտանեկան ուրախութեան այս խորասուզումը, մղձաւանջի վերածուեցաւ այն օրը՝ որ լսուեցաւ Ամերիկայի մասնակցութիւնը նոր պատերազմին: Տիգրան ցնցուեցաւ իր հոգիով ու մարմնով: Իր աչքերուն առջեւ կարծես ամէն ինչ թաւալ կուգար հրէշային երեւոյթով: Գործարանը, ձուլարանի սպիտակ հնոցին մէջ, Տիգրան կարծես կը տեսնէր իր տղոց գլուխները, անոնց նայուածքներն ու տխուր դիմագծերը… Աշխատանքի պահուն, երբեմն կը խորասուզուէր ինքնամոռացութեան մէջ, եւ սալին վրայ դրուած չիկացած երկաթին ճերմակ երակները կը շարժէին, կարմիր ու սեւ գոյներու կը վերածուէին իր տեսողութեան առաջ: Մարմինը կ՚երերար ու իր բազուկներուն ուժը՝ կը թուլնար: Տուն կուգար ջղայնոտ:

Առտու մը, արցունքի եւ համբոյրներու տակ, Տիգրան ղրկեց իր տղաքը, սեղմեց իր կուրծքին, շոյեց անոնց ճակատն ու մազերը, եւ հայրական քանի մը խրատական խօսքերէ վերջ՝ ճամբու դրաւ զանոնք: Տիգրանի կինը ծռած էր ինքն իր վրայ, եւ հեկեկումը կը լսուէր հեռուէն: Տիգրանի տղաքը գացին պատերազմի:

Ամէն իրիկուն, գործէ դարձին՝ Տիգրան աչք կը նետէր սեղանին՝ նամակ կամ բացիկ մը տեսնելու իր տղոցմէն: Եկած նամակները քանի մը անգամ կը կարդար, բռնի ժպիտ մը կ՚ուրուագծուէր իր դէմքին վրայ եւ աչքերը կը յառէր եռոտանի սեղանին, որուն վրայ դրուած էր իր տղոց նկարները: Պառկելէ առաջ, առանց իր տղոց նկարներուն նայելու անկողին չէր մտներ: Գիշերները երկար կը թուէին իրեն ու ամէն ինչ ճնշող էր ու տխուր:— Ե՞րբ պիտի վերջանայ այս արիւնամարտը, — կը մտածէր ինքնիրեն:

Տղուն մէկը Մարոքէն կը գրէր, իսկ միւսը՝ կը գտնուէր Խաղաղականի ափերը:

Ամէն յուսաբացին Տիգրան յոյսով մը կ՚արթննար եւ կ՚ուզէր քաջալերել իր կինը, որուն նայուածքին մէջ գալկութիւն ու թախիծ իրար էին խառնուած: Յոյսի եւ սպասումի իրենց հոգեվիճակը տենդի փոխուեցաւ այն ատեն միայն, երբ դղրդագին լուրը շանթի պէս տարածուեցաւ Ամերիկայի մէջ:

— Երկրորդ ճակատը բացուեցաւ այս առաւօտ, Ֆրանսական, պելժիական ու հոլանտական ափերուն վրայ…

Մարդիկ քարացած աչքերով, իրենց հեւքը բռնած՝ ականջ կուտային շրջած լուրերուն, յաղթական բանակներու արշաւին, ու թշնամուն նահանջին: Երեկոյեան շատ ուշ ատեն, Տիգրան գոցեց ձայնախօսին կոճակը եւ երերալէն գնաց պառկելու:

Անցան ամիսներ, Տիգրան դեռ լուր չունէր իր մեծ տղուն՝ Վահանի մասին: Պզտիկ տղան վերջին նամակը գրած էր Պաթաանէն՝ (Խաղաղական), յոյս եւ կորով ներշնչելով իր ծնողքին:

Օրեր, շաբաթներ, նոյնիսկ ամիսներ անցան, եւ ոչ մէկ լուր Տիգրանի մեծ տղէն:

Ծանուցուած «յաղթանակ»ը ոեւէ կերպով չէր կրնար մխիթարել Տիգրանն ու իր կինը:

Հոգեքաշ մթնոլորտ մը կը ճնշէր Տիգրանի տունը: Ատլանտեանի եւրոպական ափին վրայ մէկը կար որմէ Տիգրան լուրի կը սպասէր, բայց այդ լուրը կ՚ուշանար: Գիշերները ծանր մղձաւանջի մը պէս կ՚իջնէին Տիգրանի սրտին ու շունչին վրայ: Զաւկի կարօտ…

Շաբաթ առտու մը, նամակաբերը Տիգրանի տան կոճակը կոխեց: Տիգրան կ՚ածիլուէր, եւ առանց երեսին օճառը սրբելու՝ դիմաւորեց նամակաբերը:

— Հըլօ՛ Տիգ.— ըսաւ ցրուիչը: = Հըլօ Ճօ՛:

— «Ճերմակ» տունէն նամակ ունիք, ըսաւ ցրուիչը եւ երկայն պահարանով, արծուակիր — նամակը յանձնեց Տիգրանին:

Ցրուիչը գնաց դուրս: Տիգրանը, երկայն նամակը ձեռքը՝ սկսաւ դիտել զայն, նայեցաւ տպագրուած հասցէին, տեսաւ պատերազմական նախարարութեան անունը եւ դողալով, բացաւ նամակը: Ընթերցումը չլրացած, Տիգրան սկսաւ երերալ, կ՚ուզէր ճչալ, բերանը բանալ եւ պոռալ, բայց ուժ չունէր, սրտին լարերը կարծես թմրած էին եւ ձայնը կը խեղդուէր իր կոկորդին մէջ:

Պատերազմական նախարարութիւնը այդ նամակով ցաւ յայտնելով, կը հաղորդէր Տիգրանի տղուն՝ Վահանին եղերական մահը՝ պելժիական Արտէնի մէջ, գերման հակայարձակման օրերուն:

Տիգրան մօտեցաւ իր տղոց նկարներուն քով, ձեռքի արծուակիր նամակը դրաւ մեծ տղուն նկարին առջեւ, ու սկսաւ հեկեկալ…

Թ. ՀԵՐՈՅԵԱՆ

# Անհրաժեշտ հերկը

Ասկէ յիսունըեօթ տարի առաջ, 1892 Նոյեմբեր 17ին, Պոլսոյ Ազգ. Հիւանդանոցին մէջ, իր «կեանքի գիրք»ը կը փակէր քաջարի ու բազմարդիւն եկեղեցական մը՝ Գարեգին եպիսկ. Սրուանձտեանց:

Հիմա գրեթէ մոռցուած է այս անունը, որ, իր ուսուցչին՝ Խրիմեանի անունին հետ, կը ծածանէր ատեն մը իբրեւ «դրօշակ հայկական»:

1892 Նոյեմբեր 18ին Արփիար Արփիարեան Պոլսոյ «Հայրենիք»ին մէջ կը գրէր Սրուանձտեանցի համար՝ անոր մահուան առիթով. «Գրեթէ երբեք հրապարակի վրայ չերեւցաւ, բայց միշտ ազդեցութիւն ունեցաւ: Ամէնուն անպաշտօն խորհրդականը եղաւ, երբեմն հրաւէրով, երբեմն ինքնահրաւէր»:

Այս «ինքնահրաւէր» խորհրդականը, Գարեգին Սրուանձտեանց, հիմնադիրն է հայ ազգագրութեան: 1878ին, մասնաւոր յանձնարարութեամբը Ներսէս պատրիարք Վարժապետեանի, հայաբնակ գաւառները մեկնեցաւ իբրեւ արտակարգ քննիչ: Տարի մը ետք վերադարձաւ Պոլիս, հետը բերելով գործ մը, որ իր անունը անմահացուց: Մեծ է հիմա իր երախտիքը մեր գրականութեան մէջ, վասնզի ինքն էր, գրեթէ միայն ինք, որ կորուստէ փրկեց հայ գաւառը՝ իբրեւ ժողովրդական արուեստի «յիշատակարան»:

Նորութիւն էր իր բերածը եւ կրնար, կրնայ մանաւանդ հիմա, սնուցանել զուտ հայեցի գրականութիւն մը: Թերեւս անգիտակ այն մեծ ժառանգութեան, որ իր անունով փոխանցուեցաւ մեզի եւ որուն համար անհունօրէն շնորհակալ պէտք է ըլլանք իրեն: Սրուանձտեանց եպիսկոպոս ինքզինք եւ իր կատարած գործը կը ներկայացնէ սա համեստ բառերով.

— «Ես գրականութեան այն շինական մշակն եմ, որ ի վայրիս եւ ի մայրիս կը թարթափի. լեռնային, դաշտային տունկեր, ծաղիկներ եւ բոյսեր կը ժողվէ եւ կողովով կ՚ածէ զայն ի վաճառ ի հրապարակս քաղաքին, յորմէ առեալ քաղաքացին՝ արուեստիւ կը վերատնկէ զայն եւ կը զարմանէ ի պարտէզս եւ ի բուրաստանս ապարանից մեծատանց: Իսկապէս այս է իմ երկն.— բանասիրաց եւ գրասիրաց համար պատրաստուած նախնական նիւթ» («ՄԱՆԱՆԱՅ», տպ. Պոլիս, 1876, «Յառաջաբան», էջ 6):

Իրական «Գանձարան» մըն է այս «նախնական նիւթ» բուածը: Միայն «Մանանայ»ով մեզի տրուած այդ գանձարանին մէջ մենք կը գտնենք «Հայաստանի տեղագրութիւնը եւ հնութիւնները, Հայոց կենցաղը, խաղեր, նախապաշարումներ, սովորոյթներ, գրոյցներ, հէքեաթներ, առասպելներ, երգեր, տաղեր, ասացուածքներ, հանելուկներ, առակներ, առածներ, բժժանք, զուարճալիք, պատմութիւն, բոյսեր, տունկեր, երկրագործական բառեր» եւայլն, եւայլն: Ձմռսուած կուռքեր, որոնց տէրն էր երբեմն մեր ժողովուրդը եւ որոնց հանդէպ կը թուի, թէ նուազած է մեր գուրգուրանքը հիմա:

Մեր գրականութեան մէջ ոչինչ այնքան կատարեալ է, որքան մեր ժողովրդական, բայց հարազատօրէն ժողովրդական արուեստը, որ տափակ ու դիւրին պարզութիւնը չէ սակայն, ինչպէս առիթով մը կը նկատէր Յակոբ Օշական:

Արդարեւ, ժողովրդական աւանդութիւնները երբ նիւթ դառնան գրական մշակումի, այսինքն երբ տաղանդաւոր բանաստեղծ մը ժողովրդական այդ հում նիւթերը ենթարկէ ստեղծագործ երկունքի, արդիւնքը կ՚ըլլայ առաջնակարգ գեղեցկութեամբ արուեստի գործ մը: Մեր ժողովուրդը շատ ունի այդ նիւթերէն, վկայ՝ Սրուանձտեանցի ձգած անսպառ ժառանգութիւնը: Բայց մեր գրագէտ տարրը դեռ չգտաւ կերպը շահագործելու հում, նախնական կոչուած այդ նիւթերը, որոնք անփոխարինելի դրամագլուխ մը կը կազմեն մեր գրականութեան համար: Շէյքսփիր, իր դարուն եւ բոլոր դարերուն մեծագոյն հանճարը, օգտագործեց հին քրոնիկներ, եւ արդիւնքը եղաւ ոչ թէ առաջնակարգ, այլ անգերազանցելի գեղեցկութեամբ արուեստի գործ մը:

Մեր գրականութիւնը ապերախտ փորձեր տուաւ այս ուղղութեամբ, եւ հիմա կը թուի, թէ մենք կորսնցուցած ենք անմիջական շփումը մեր անցեալին հետ: Չենք կրնար անջատուիլ մեր դարաշրջանէն, որովհետեւ ժամանակի ոգին իր անջնջելի կնիքը կը դնէ ամէն արուեստի գործի վրայ, նոյնիսկ հակառակ մեր կամքին: Բայց չենք կրնար նաեւ ուրանալ անցեալը, որուն կապուած ենք առհաւութեամբ եւ որուն հարկատու ենք արեանի գիծով:

..Ի՞նչ է մեր ուզածը հիմա: Շատ պարզ բան մը.— Հէմինկուէյը յիշենք, բայց Սրուանձտեանցը չմոռնանք: Մօտենանք «հանուր մարդկութեան», բայց չհեռանանք ազգային խարիսխէն: Խունկ ծխենք օտար սուրբերուն առջեւ, բայց պատէն վար չառնենք մեր սուրբերուն նկարները: Կը մոռնա՞նք, թէ՞ չտեսնելու կը զարնենք, որ մեր գրականութեան մէջ հետզհետէ կը նօսրանայ ազգային օդը, կը նօսրանայ ազգային մթնոլորտը, կը նօսրանայ ազգային կլիման:

Միակ բանը, որ կրնայ դեռ կանգուն պահել մեզ հայրենի հողէն դուրս, ազգային կոչուած այս ներքին, հոգեկան մթնոլորտն է:

Հիմա մեր գաւառը մեռած է կամ մեռնելու վրայ է: Այս ձեւով լուծուած է գաւառական գրականութեան հարցն ալ, որուն համար ատեն մը իրենց ծանր սուրերը պատեանէն դուրս հանեցին մեր հին ու նոր գրողները: Հիմա քաղաքն է, որ կ՚իշխէ մեր գրականութեան ու մեր հոգիներուն մէջ: Վաղը հաւանաբար ջնջուին գիւղի, քաղաքի, երկրի սահմաններն ալ, եւ մենք սկսինք ապրիլ «հիւլէական դարաշրջան»ի մը մէջ, առանց ցեղային սահմանագծումներու: Այն ատեն մեր այբուբենն է, որ պիտի կրնայ փրկել մեզ ընդհանուր հալոցին մէջ անհետ կորսուելու վտանգէն:

Մեզ մտահոգողը ի վերջոյ այն չէ, որ մեր դարաշրջանին կնիքը զօրաւոր է մեր վրայ: Մեզ մտահոգողը այն է, որ ազգային մթնոլորտին կնիքը տկար է մեր վրայ:

Հիմա, այս պայմաններուն մէջ, անհրաժեշտ հերկ մը ընել է վերակենդանացնել ժողովրդական տարրը մեր գրականութեան մէջ: Այս «հերկ»ին անհրաժեշտութիւնը զգացած էր ամէնէն առաջ Սրուանձտեանց ինքը, ասկէ եօթանասունըերեք տարի առաջ, երբ կը գրէր նոյն «Մանանայ»ին մէջ.

— «Ժամ է սրբել մեր քնարից փոշիները, կքել, լարել անոնց թոյլ եւ կտրած լարն ու թելը, ի գործ դնել տպագիր մամուլը եւ անոր միջոցաւ հանդերձի եւ հացի պէս տարածել ազգային տաղերը, վէպերը, գրաքննական եւ հնախօսական գրուածքներն ու ասացուածքները, անհատական եւ ժողովրդական կենսագրութիւնները եւ տեղական նկարագիրները: … Այո, ազգ մը գրողներէ եւ խօսողներէ կը զարթնու եւ կ՚ուղղուի, գործողներով կը շինուի եւ խորհողներով կը փրկուի»:

Ժամանակն է, որ քիչ մըն ալ խորհինք այս «փրկութեան» մասին:

(Խմբագրական՝ ՅՈՒՍԱԲԵՐԻ)

# «ՔԱՌԷՆ ԵՓՓԷ» ՃԵՄԱՐԱՆ

## ԱՅՍ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՆ ԱԼ ԱՐԺԱՆԻ Է ՁԵՐ ԳՈՒՐԳՈՒՐԱՆՔԻՆ

Ճիշդ երկու տարի առաջ, կ'աւետէինք բացումը Հալէպի Ազգ. Ճեմարանին, որ «Քառէն Եփփէ» անունով կը մկրտուէր Ազգ. Իշխանութեանց կողմէ՝ յաւերժացնելու համար յիշատակը դանիացի մեծ բարերարուհի եւ հայասէր Օր. Քառէն Եփփէի :

Իր տեղին խօսած էինք նիւթական թէ բարոյական այն անփոխարինելի ծառայութեանց շուրջ, զորս մատուցած է դանիացի այս մեծ բարերարուհին, ամբողջ երեսուն տարի բաժնելով հայ այրի մայրերու եւ հայրերու, ու հազարաւոր հայ որբուկներու ցաւն ու զրկանքը :— Մեծ Եղեռնէն առաջ թէ վերջ, Ուրֆայէն մինչեւ Հալէպ, Օր. Քառէն Եփփէ, արհամարհելով աշխարհիկ բոլոր հաճոյքներն ու վայելքները՝ իր հարուստ ծնողքին տան եւ իր հայրենիքին մէջ, փութացած է իր բովանդակ հարստութիւնը յատկացնելու ջարդէն եւ Թուրքի հալածանքէն ճողոպրած բեկորներու, եւ յաջողած է ամոքել անոնց ցաւն ու մեղմացնել անսահման թշուառութիւնը :

Երբ հայութեան սեւ օրերու անչափ տառապանքը չահագործելու տմարդի փորձերուն լծուած էին այլազգի եւ այլադաւան բազմաթիւ կրօնական ներկայացուցիչներ,— մասնաւորաբար Հայաստանեայց եկեղեցւոյ գրկէն հեռացնելու համար կմախացած եւ հիւծած հայ բազմութիւններ,— Օր. Քառէն Եփփէ հանդիսացաւ այն առաքելատիպ կինը, որ ոչ միայն իր նիւթական հարստութիւնը, այլեւ բարոյական գանձերն ու ազգանունը նուիրաբերեց տառապած հայ ժողովուրդին, հայ լեզուն խորապէս ուսումնասիրելով, եւ որպէս Հայ, հայկական ծէսով ամփոփուելով Հալէպի Ազգ. գերեզմանատան մէջ :

Օր. Քառէն Եփփէի մահէն վերջ, կազմուած էր Դանիացիներու օժանդակ մարմին մը, որ մասնակի ձեւով կը շարունակէր իր օգնութիւնը հայութեան ամէնէն դժբախտ տարրին,— այրիներու եւ իրենց զաւակներուն: 1946ին միայն,, երբ արդէն այդ այրիներու զաւակներէն մեծագոյն մասը դարձաւ գործի տէր, եւ ի վիճակի՝ հոգալու տան կարիքները, Ազգ. իշխանութեան թելադրութեամբ եւ ենթականերու սիրայօժար պատրաստակամութեամբ, անոնց մեծամասնութիւնը լքեց Քառէն Եփփէ հաստատութեան շէնքերը եւ մեկնեցաւ առանձին բնակարան :

Այս կերպով ալ, կարելի եղաւ ընդարձակ տարածութեամբ հող մը եւ եօթնի մօտիկ միյարկանի շէնքեր յատկացնել Հալէպի Ազգ. երկրորդական վարժարանին, որուն ծրագիրը տարիներէ ի վեր կը մնար դարակներու մէջ, անիրագործելի, նիւթական միջոցներու անբաւարարութեան պատճառաւ:

Հալէպի Ազգ. Նախակրթարաններէն հարիւրաւոր հայ տղաք եւ աղջիկներ ընթացաւարտ կը դառնան ամէն տարի: 15–20 տարիէ ի վեր, ամբողջ սերունդներ պարտադրաբար օտար վարժարաններ կը յաճախէին Նախակրթարանէն վերջ, նկատելով որ գոյութիւն չունէր ազգ. ճեմարան մը: Եւ շատ դիւրին է երեւակայել, թէ անոնք ինչ դիմագիծ կը ստանային, իբրեւ հետեւանք անհաբաղատ դաստիարակութեան մը:

Ազգ. իշխանութիւններու համար, տարուէ տարի կորուստ մըն էր որ կ'արձանագրուէր ազգային տեսակէտով: Շատ պարզ է, թէ օտար բարձրագոյն վարժարաններ՝ թէեւ կուտան գոհացուցիչ կրթութիւն եւ զարգացում, բայց, ոչ միայն անբաւարար դաստիարակութիւն կ'ընծայեն ազգային տեսակէտով, այլ նոյնիսկ կը խաթարեն մեր տղոց եւ աղջիկներու նկարագիրը:

Տարիներու մտահոգութիւններն ու Ազգ. Ճեմարանի մը հաստատութեան բաղձանքները ի վերջոյ կը պսակուէին յաջողութեամբ, 1947 Սեպտեմբերին, եւ այդ թուականին բացումը կը կատարուէր «Քառէն Եփփէ» հայկական ճեմարանին, դանիական համանուն բարեսիրական մարմնի հողին վրայ եւ շէնքերուն մէջ :

«Քառէն Եփփէ» բարեսիրական միութեան, Օր. Քառէն Եփփէի ժառանգներուն ու ներկայացուցիչներուն հետ տեղի ունեցած թղթակցութիւններու եւ բանակցութեանց իբրեւ ամբողջական պսակում՝ 200.000 ս. ոսկի (մօտաւորապէս 70.000 տոլար) արժողութեամբ հողերն ու շէնքերը պաշտօնապէս սեփականութիւն կը դառնային Հալէպի Ազգ. իշխանութեանց, եւ կը ստեղծուէր հաստատուն պատուանդանն ու կորիզը այսօրուան պատուաբեր կրթական հաստատութեան:

Ճիշդ է, թէ «Քառէն Եփփէ» Ազգ. ճեմարանը աւելի քան մխիթարական իրականութիւն մըն է այսօր, եւ տարուէ տարի կը բազմանայ երկսեռ աշակերտութեան թիւը: Բայց նաեւ մեծածախս ձեռնարկ մըն է՝ որպէս տնտեսական լայն միջոցներու կարօտ հաստատութիւն :

«Քառէն Եփփէ» ճեմարանը ընդունած է ֆրանսական պաքալորէայի ծրագիրը: Անշուշտ, այս ծրագրի իրագործման համար՝ Ազգ. իշխանութիւնները աչքի առջեւ ունեցան տեղական պայմաններ եւ նախասիրութիւններ, նկատելով որ հիմնականը ազգային դաստիարակութիւնն է եւ հայեցի շունչը: Իսկ ինչ որ տղաքն ու աղջիկները պիտի ստանան որպէս զարգացում եւ կեանքի ասպարէզի պատրաստութիւն, այդ՝ լիովին կուտայ արդէն ֆրանսական ծրագիրը:

Այս հիման վրայ, ճեմարանը ներկայիս ունի չորս դասարաններ, Ա) Նախապատրաստական, Բ) Առաջին դասարան, Գ) Երկրորդ դասարան եւ Դ) Երրորդ դասարան: Ճեմարանի ընդհանուր շրջանը վեց տարի է այս հաշուով: 1950 – 1951 եւ 1951 – 1952 տարեշրջաններուն, ճեմարանը պիտի ունենայ վեց լրիւ դասարաններ, եւ պիտի տայ իր երախայրիքը:

Ներկայ չորս դասարաններու աշակերտութիւնը կը հասնի 63ի, մանչեր եւ աղջիկներ:

Կարելի է ըսել, թէ ճեմարանը այս տարի ունի Հալէպի եւ բովանդակ Սուրիա – Լիբանանի հայկական եւ օտար լաւագոյն ճեմարաններու ուսուցչական կազմերուն հաւասար զօրաւոր եւ «սուղ» տարրեր:— Խնամակալութիւնը, նիւթական մեծ զոհողութիւններու գնով ապահոված է ֆրանսերէն, անգլիերէն, հայերէն լեզուներու, արաբերէն լեզուի եւ գրականութեան, ինչպէս գիտական ճիւղերու մէջ ձեռնհաս ուսուցիչ ու ուսուցչուհիներ :

Ուսուցչական տարեթոշակներու եւ վարժարանին զանազան կարիքներու գումարը կը հասնի տարեկան 28.000 սուրիական ոսկիի (մօտ 10.000 տոլար), որուն 5000 տոլարը միայն կը գոյանայ կրթաթոշակներէ եւ զանազան կազմակերպութեանց նպաստներէ (այս նպաստներու կարգին՝ Հ. Օ. Խաչի 1500 տոլար տարեկան յատկացումը):— Այս ելեւմուտքով, ճեմարանը այս տարի պիտի ունենայ 4—5000 տոլարի բաց մը՝ որուն մէկ մասը կը յուսացուի ապահովել մասնաւոր ձեռնարկներով :

Պէտք է նկատի ունենալ, թէ Սուրիահայութիւնը աւելի քան 100.000 համրանք ունի եւ միակ ճեմարան մը՝ Հալէպի մէջ: Միւս կողմէ, պէտք է գիտնալ նաեւ՝ թէ սուրիահայութեան համար գրեթէ անկարելի է օգտուիլ Պէյրութի ճեմարանէն, նկատելով որ սուրիահայութիւնը միջոցներ չունի նոյնիսկ զեղչեալ գիներով իր զաւակները Լիբանան ղրկելու, որպէս գիշերօթիկ :

«Քառէն Եփփէ» ճեմարանը այս տարի ունեցաւ նաեւ իր ուսանողական տունը եւ լսարանը : Գաւառներու նախակրթարաններէն այս տարի մօտաւորապէս 15 – 20 ուսանող – ուսանողուհիներ կը յաճախեն՝ բարձրագոյն կրթութիւն ստանալու ծարաւով :

Որպէս երկու տարուան հաստատութիւն, ճեմարանը պէտք ունի կարգ մը անհրաժեշտ նիւթերու.— Լապոռաթուար, մարզարան, գրադարան, աշխարհագրական եւ պատմական քարտէսներ, խաղարան, եւայլն:

Քիմիական փորձերու համար բազմաթիւ անօթներ կը պակսին. բնապատմութեան (ֆիզիք) փորձերու համար բազմաթիւ գործիքներու պէտք կայ: Պիտի չունենա՞նք ծնողներ, ունեւոր թէ բարեկեցիկ, որոնք հոգեկան բաւարարութիւն նկատեն այս կենսական առարկաները հոգալ :

1950 – 1951 եւ 1951 – 1952 յաջորդական երկու տարեշրջաններու ընթացքին, «Քառէն Եփփէ» ճեմարանը անհրաժեշտաբար պէտք ունի երկու նոր դասարաններու՝ որոնց շինութիւնը կը կարօտի հազարաւոր ոսկիներու: Նկատելով որ խնամակալութիւնը ի վիճակի չէ տոկալու այսքան մեծ զոհաբերութիւններու, ճեմարանը իր աչքերը յառած է գաղթահայ ունեւոր խաւերուն, ապահով՝ որ անոնք պիտի չզլանան ամէն աջակցութիւն:

Ճեմարանի դուռը ափ առնող ուսանողներու մեծագոյն մասը՝ միջակ ընտանիքներու զաւակներ կը կազմեն: Հալէպի Հայրենակցական միութիւններէն շատեր ցոյց կուտան անհրաժեշտ օժանդակութիւնները, սաներ պահելով, բայց այդ պաշտպանութիւնը սահմանափակ է եւ բազմաթիւ տղաք ու աղջիկներ կը սպասեն օգնութեան: Ինչ բարերար դեր կատարած պիտի ըլլային Հայրենակցականներու կեդր. Վարչութիւնները, եթէ չզլանային իրենց նպաստը այս փրկարար գործին:

«Սերունդներու փրկութիւն» կը հոլովենք :— Ահաւասիկ առիթը՝ գործնապէս ցոյց տալու՝ թէ անվերապահ եւ առաջաձեռն ենք «ազգապահպանում»ի ձեռնարկներու հանդէպ : Մ.

ԳԻՏԱԿԱՆ ԱՍՈՒԼԻՍ

# Մեր մթնոլորտը

Գիտութեան յառաջդիմութեան շնորհիւ ներկայիս տիեզերքքի բաղկացուցիչ նիւթին գաղտնիքը լուծուած պէտք է նկատել: Հիւլէներու ներքին կառուցուածքին թափանցելէ վերջ, գիտութիւնը պարզեց նաեւ հասարակ կոչուած մարմիններու ծագումը ու նիւթին բնաշրջութիւնը (transmutation): Այս վերջին երեւոյթը թէեւ բնական ճանապարհով շատ դանդաղօրէն տեղի կ'ունենայ, սակայն կարելի է գիտական միջոցներով հասարակ մարմիններու ներքին կազմին մէջ փոփոխութիւն յառաջ բերել շատ կարճ միջոցի մը մէջ: Այդ արուեստական բնաշրջութեամբ կարելի է, օրինակ, սնդիկը վերածել ոսկիի: Հին դարերու քիմիկոսներու երազը իրականութիւն դարձած է այսօր :

Մեր երկրագունդի կազմութեան շրջանին, կ'ենթադրուի թէ գոյութիւն ունէին շատ սահմանափակ թուով տարրեր: Թերեւս ջրածինը եւ հէլիոմը կը կազմէին միակ տարրերը, որոնք շատ բարձր ջերմութեան եւ ճնշումներու ազդեցութեամբ ծնունդ տուին հասարակ մարմիններուն :

Այս սկզբունքէն մեկնելով, երկրագունդին ծաւալը պէտք է ենթադրել այժմու ծաւալին 4–10 անգամը, որ հետզհետէ կծկուեցաւ բնաշրջութեամբ: Վերջապէս երկրի կեղեւին կազմութեամբ կազային թանձր խաւ մը զատուեցաւ երկրագունդի հալած զանգուածէն ու քիմիական հուժկու եւ պայթուցիկ ներգործութիւնները հետզհետէ մեղմացան:

Այն ատենուան մթնոլորտը բոլորովին տարբեր էր հիմակուանէն: Իր մէջ կը պարունակէր կազային վիճակի մէջ ամէնէն ցնդող մետաղներէն փօթասը, սոտան եւ կիրը: Քլորը եւս մեծ քանակութեամբ մաս կը կազմէր այդ մթնոլորտին, ջրածինի եւ հէլիոմի հետ: Այս բոլոր շոգիացեալ մարմինները երկրիս պաղելով կրցան աստիճանաբար իրար միանալ ու կազմել հաստատուն տարրեր: Այսպէս, մետաղները խառնուելով երկրիս կեղեւին վրայ կազմեցին քլորի, պրոմի, ծըծումբի եւայլ բաղադրութիւններ: Իսկ ջրածինը միանալով թթուածինին ծնունդ տուաւ ջուրին, որ շոգիացած մնաց այնքան ատեն որ երկրիս ջերմութիւնը 360 աստիճանէն վեր էր :

Կրնաք երեւակայել թէ ինչ մեծ ճնշումի ենթարկուած էր երկրիս մակերեսը այդ ծանր մթնոլորտին տակ, ուր շոգիացած կը մնային ոչ միայն վերօյիշեալ տարրերը, այլեւ երկրիս ջուրերու հսկայ զանգուածը, թթուածինի, ազօթի, բնածխային կազի զանգուածները:

Երբ ջուրը խտանալով շոգիացած վիճակէն հեղուկի վերածուեցաւ, հեղեղանման խուժեց դէպի երկրիս կեղեւը, ուր գտաւ լուծելի աղեր եւ կազմեց անդնդախոր ովկիանոսներ, ընդարձակ ծովեր ու լիճեր :

Իսկ երբ երկրիս մակերեսային ջերմութիւնը 55 աստիճանի իջաւ, ահա այն ատեն մթնոլորտը զտուեցաւ ու բնագիտական տեսակէտով շնչելի դարձաւ: Իսկ քիմիական տուեալներով հարցը վիճելի է: Որովհետեւ թթուածինի քանակը այժմու համեմատութենէն նուազ էր եւ բնածխային թըթուն ջուրի շոգիին հետ կը ձեւացնէին թանձր ամպեր որոնք թէ արգելք կը դառնային երկրիս պաղելուն եւ թէ արեւու ջերմութեան թափանցումին :

Այժմ բնածխային թթուին համեմատութիւնը 3 առ հազար է մօտաւորապէս: Արհենիուսի հաշուով եթէ այդ քանակութիւնը օր մը անհետանար, հողին ջերմութիւնը 21 աստիճանի անկում մը պիտի արձանագրէր:

Վերջացա՞ծ է մթնոլորտային յեղաշրջումը : Ոչ անշուշտ: Այժմ բնածխային թթուին քանակը յաւելման հակամէտ է բնական թէ ճարտարարուեստական կիզումներու հետեւանքով: Այդ կը նշանակէ երկրային ջերմութեան բարձրացում, որ կը նպաստէ բուսականութեան, հետեւաբար նաեւ մարդկութեան: Սակայն դժբախտաբար երկիրը չի կրնար խուսափիլ պաղելու ճակատագրական օրէնքէն: Արեւուն ջերմութեան նուազումով հետզհետէ երկիրը պիտի վերածուի սառուցեալ զանգուածի մը: Մթնոլորտը պիտի չքանայ ու միայն թթուածինի եւ հէլիոմի թեթեւ խաւ մը տակաւին շատ երկար պիտի պատէ սառած ու կեանքի գոյութենէ զուրկ երկրագունդը :

Սակայն մի մտահոգուիք, հոդ չէնք հասած տակաւին: Դեռ միլիոնաւոր տարիներ մեր աշխարհը պիտի շարունակէ կեանքի գոյութիւնը պահել, եթէ մինչ այդ մարդիկ իրար չըզկտեն ...

ԳՈՒՐԳԷՆ ՊՕՅԱՃԵԱՆ

---

ՕՆՆԻԿ (5 տարեկան).— Մայրիկ, ինչո՞ւ նոր հարսը ճերմակ կը հագնի :

ՄԱՅՐԸ.— Ճերմակը՝ ուրախութեան, երջանկութեան եւ անմեղութեան գոյնն է:

ՕՆՆԻԿ.— Ուրեմն ինչո՞ւ փեսան սեւ կը հագնի ..:

